Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ XXIX ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ ԸՆԿ Ն. Ա. ՄԻԽԱՅԼՈՎԻ զեկուցումը Մոսկվայում կայացած սգո-հանդիսավոր նիստում . . . . . . . . . . . . 1

Ագիտացիոն աշխատանքի փորձից

Ա. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ.— Ագիտացիոն աշխատանքը ընտրական տեղամասում . . . . . 38

Նոր գրքեր . . . . . . . . . . . . 48

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ,
Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին,
Հեռախոս՝ 2—52—78

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ XXIX ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

## ԸՆԿ. Ն. Ա. ՄԻԽԱՅԼՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՄՈՍԿՎԱՅՈՒՄ ԿԱՅԱՑԱԾ ՍԳՈ-ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ

Ընկերնե՛ր։

Այսօր լրանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիմնադիր ու ղեկավար Սովետական սոցիալիստական պետության ստեղծող, ամբողջ աշխարհի աշխատավորների առաջնորդ և ուսուցիչ, հանճարեղ մտածող և ռևոլյուցիոն գիտության մեծ կորիֆեյ, Վլադիմիր Իլյիչ Լենինի մահվան քսանինը տարին։

Այդ բոլոր տարիներին Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին վստահորեն տանում է Լենինի նշած ուղիով։ Լենինիզմի գաղափարները վառ արևի լույսի նման լուսավո-

րում են մեր պայքարի ու հաղթանակների ուղին։ Լենինի դրոշով, ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կառուցում է կոմունիզմի հոյակապ շենքը։

Սովետական պետության նվաճումները, խաղաղության ու դեմոկրատիայի լագերի ուժերի հզոր աճը իրենց մեջ մարմնացնում են լենինիզմի անհաղթահարելի ուժն ու վեհությունը, լենինիզմ, որը վճռական ազդեցություն է գործում համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա։ Լենինյան գործն անմահ է։ Ժամանակն անզոր է Լենինի հանճարի հանդեպ։ Մեծ Լենինի կերպարն ապրում է ամբողջ աշխարհի աշխատավորների սրտերում, պայքարի է ոգեշնչում հանուն նոր կյանքի, դեմոկրատիայի, սոցիալիզմի։

## I.

Լենինը սոցիալիստական ռևոլյուցիայի մեծագույն հանճարն է։ Նրա ղեկավարությամբ մեր երկրի բանվոր-



ներն ու գյուղացիները իշխանությունը վերցրին իրենց ձեռքը։ Մարդկության պատմության մեջ սկսվեց նոր դարագլուխ՝ կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի հաղթանակի դարագլուխը։

«Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, —ասել է Լենինը,—կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը»։

Սովետական պետությունն իր գոյության առաջին օրերից ձեռնամուխ եղավ սոցիալիզմի կառուցման պատմական խնդրի լուծմանը։ Քաղաքացիական պատերազմի և զինված ինտերվենցիայի ծանր տարիներից հետո մեր երկրի աշխատավորները վերականգնում էին արդյունաբերությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունը, կարգավորվում էր քաղաքի և գյուղի զոդումը, ամրապնդվում ու ընդլայնվում էր բանվորների և գյուղացիների դաշինքը։

Լենինը անսասանորեն հավատում

էր ժողովրդի ստեղծագործական ուժերին։ Մեծ առաջնորդը կանխատեսում էր Սովետական պետության զարգացման ուղիները շատ տասնամյակներ առաջ և մարգարեաբար պնդում էր, որ Ռուսաստանը կդառնա սոցիալիստական երկիր։

Ցույց տալով ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման ուղիները, Լենինը նշում էր, որ սոցիալիզմի նյութական հիմքը ծանր ինդուստրիան է։ Երկրի կոմունիստական վերափոխման գործում Լենինը առանձնահատուկ նշանակություն էր տալիս էլեկտրիֆիկացիային։ Միայն այն ժամանակ,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— երբ ամբողջ երկիրը կպատվի էլեկտրական կայանների խիտ ցանցով, մենք կարող ենք ստեղծել կոմունիստական հասարակարգ։

Կոմունիստական պարտիան պետք է սոցիալիզմ կառուցեր այնպիսի երկրում, որտեղ գերակշռում էր մանր գյուղացիական տնտեսությունը։ Լենինն իր աշխատություններում խորապես ու բազմակողմանիորեն մշակեց գյուղը նոր ձևով վերակառուցելու ուղիների



երկրի աշխատավոր գյուղացիությանը սոցիալիստական շինարարության գործի մեջ ներգրավելու հարցը։

Պարտիայի և սովետական ժողովրդի թշնամիները՝ տրոցկիստական-բուխարինական վիժվածքները, կապիտուլյանտները և դավաճանները փորձում էին խանգարել պարտիային՝ իրականացնելու իր պատմական խնդիրները, ուզում էին նրան շեղել ճիշտ ուղուց։ Լենինը և Ստալինը անխնա հակահարված տվեցին այդ բոլոր փորձերին, կոփելով և սովորեցնելով պարտիային, նրան դաստիարակելով սովետական Հայրենիքի բոլոր թշնամիների նկատմամբ անհաշտության և աշխատավորների գործին անսահման հավատարմության ոգով։

Լենինը պարտիային ու ժողովրդին թողեց անգնահատելի գանձ՝ մեծ ու անպարտելի գիտությունը նոր աշխարհի կառուցման մասին։ Վլադիմիր Իլյիչ Լենինի դագաղի մոտ նրա հավատարիմ զինակից ու հետևորդ ընկեր Ստալինը երդում տվեց սրբությամբ կատարել լենինյան պատգամները և անշեղորեն ընթանալ լենինյան ուղիով։

Ընկեր Ստալինը, Կոմունիստական պարտիան կատարեցին այդ երդումը։ Անդարձ անցյալի գիրկն է չքացել ցարական Ռուսաստանի դարավոր հետամնացությունը։ Ընդմիշտ անհետացել են աշխատավորների գործազրկությունը, անգրագիտությունը, անհույս կարիքն ու վիշտը։ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունն այժմ դարձել է հզոր սոցիալիստական տերություն բարձր զարգացած առաջնակարգ արդյունաբերությամբ, խոշոր կոլեկտիվ գյուղատնտեսությամբ, առաջավոր էկոնոմիկայով ու կուլտուրայով։ Սովետական երկիրը խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար մարտնչող ամբողջ պրոգրեսիվ մարդկության հպարտությունն ու հույսն է, սոցիալիզմի անմար փարոսը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի՝ վերջերս տեղի ունեցած 19-րդ համագումարն ամփոփեց



Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի հաղթանակների արդյունքները և նշեց ՍՍՌՄ-ում կոմունիզմի հետագա կառուցման ծրագիրը։ Համագումարը հաստատեց դիրեկտիվներ ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, որի կատարումը կարևոր էտապ կհանդիսանա սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին։

Սովետական ժողովուրդը խանդավառությամբ դիմավորեց հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներն ու հիմնական առաջադրանքները և միահամուռ կերպով հավանություն տվեց դրանց։ Ամեն օր հայրենի երկրի բոլոր անկյուններից լուրեր են ստացվում սովետական մարդկանց աշխատանքային հերոսության մասին։ Լենինի—Ստալինի պարտիայի փորձված ղեկավարությունը, սովետական մարդկանց կամքը, նոր ուժով ծավալված սոցիալիստական մրցությունը լավագույն երաշխիքն են, որ հնգամյակի առաջադրանքները ոչ

միայն կկատարվեն, այլև կգերակատարվեն։

Լենինը իր աշխատություններում հանճարեղ կերպով սահմանել է դեպի կոմունիզմ սովետական հասարակության շարժման հիմնական գիծը, ցույց է տվել կոմունիստական հասարակարգի զարգացման երկու փուլերը։ Լենինը սովորեցնում է, որ սոցիալիզմը և կոմունիզմը անջատված չեն չինական պարսպով, որ դրանք հասարակական-տնտեսական տարբեր ֆորմացիաներ չեն։ «...Սոցիալիզմը,— ասում է Լենինը,— այն հասարակությունն է, որն աճում է կապիտալիզմից անմիջականորեն, նոր հասարակության առաջին տեսակն է։ Իսկ կոմունիզմը հասարակության ավելի բարձր տեսակն է և նա կարող է զարգանալ միայն այն ժամանակ, երբ միանգամայն ամրացած կլինի սոցիալիզմը»։

Հենվելով լենինյան ժառանգության վրա, զարգացնելով և հարստացնելով մարքսիզմ-լենինիզմը, ընկեր Ստալինը ընդհանրացրեց ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման փորձը, բացահայտեց սոցիալիզմից կոմունիզմին անցնելու



օբյեկտիվ օրինաչափությունները և պարտիայի ու սովետական ժողովրդին զինեց կոմունիզմի համար պայքարի հստակ ծրագրով։ Ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատությունը տալիս է պատմական նոր պայմաններում պարտիայի առջև կանգնած թեորիական և պրակտիկ ամենաբարդ հարցերի լուծումը, բացում և լուսավորում է կոմունիստական շինարարության հեռանկարները։

Այն խնդիրները, որոնք սովետական ժողովուրդը պետք է լուծի սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ճանապարհին, բարդ են և բազմազան։ Սակայն այդ խնդիրները անկասկած կլուծվեն հաջողությամբ։

Ոգեշնչվելով Լենինի—Ստալինի պարտիայի կողմից, ուժերով և իր է՛լ ավելի լավ ապագայի նկատմամբ հավատով լի սովետական ժողովուրդը ընթանում է լենինյան ուղիով։ Իվ առանց Լենինի կատարված աշխատանքի բոլոր տարիներին, բոլոր դժվարին շրջադարձային փուլերում պարտիան առջևում տեսնում է իր ա-

ռաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինին մասսաների գլուխն անցած։ (Երկարատև ծափահարություններ): Մեր պարտիայի մարտական կոչը՝ Լենինի դրոշի ներքո, Ստալինի առաջնորդությամբ առա՜ջ, դեպի կոմունիզմի հաղթանակը,— այս կոչը խորապես թափանցել է սովետական ժողովրդի գիտակցության մեջ և հիանալի կերպով արտահայտում է այն անվիճելի ճշմարտությունը, որ Լենինի գործը հաղթանակում է, որ ընկեր Ստալինը հաստատակամորեն և անսասան կերպով աշխատավորներին տանում է դեպի կոմունիզմ։ (Երկարատև ծափահարություններ):

## II.

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Մարքսը և Էնգելսը հայտնագործեցին կապիտալիզմի տնտեսական օրենքները, ապացուցեցին, որ պատմականորեն անխուսափելի է կապիտալիստական հասարակարգի կործանումը և նրա փոխարինումը նոր հասարակարգով։

Հանճարեղ կերպով ամփոփելով հետագա պատմական ժամանակաշրջանի երևույթները, Լենինը ցույց տվեց կապիտալիզմի ամենաբարձր ստադիայի՝ իմպերիալիզմի էությունը, հիմնական գծերը և զարգացման օրենքները։ «Լենինի մատուցած ծառայությունը և, հետևապես, Լենինի մոտ նորն այստեղ այն է,— ասում է ընկեր Ստալինը,— որ նա, հենվելով «Կապիտալ»-ի հիմնական դրույթների վրա, տվեց իմպերիալիզմի, որպես կապիտալիզմի վերջին փուլի հիմնավորված մարքսիստական վերլուծությունը, բաց անելով նրա խոցերն ու նրա անխուսափելի կործանման պայմանները»։

Ստեղծագործորեն զարգացնելով լենինիզմը, ընկեր Ստալինը տվեց կապիտալիստական ամբողջ սիստեմի ընդհանուր ճգնաժամի խոր վերլուծությունը, բացահայտեց ժամանակակից կապիտալիզմի և սոցիալիզմի տնտեսական օրենքների էությունը։

Ընկեր Ստալինը հայտնագործեց ժամանակակից կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքը և սոցիալիզմի հիմնական տնտեսական օ-

րենքը։ Այդ օրենքների հակադիր բընույթը որոշում է նաև սոցիալիզմի լագերի և կապիտալիզմի լագերի տընտեսական զարգացման երկու հակադիր գծերը։

Զարգացման մեկ գիծը՝ դա խաղաղ էկոնոմիկայի անընդհատ վերելքն է Սովետական Միությունում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Զարգացման մյուս գիծը՝ դա կապիտալիզմի էկոնոմիկայի գիծն է, որի արտադրողական ուժերը դոփում են տեղում, որի էկոնոմիկան թպրըտում է կապիտալիզմի ավելի ու ավելի խորացող ընդհանուր ճգնաժամի և կրկնվող անտեսական ճգնաժամերի ճիրաններում, դա՝ էկոնոմիկայի ռազմականացման, երկրների միջև մրցակցային պայքարի, ուրիշ երկրների կողմից որոշ երկրների ստրկացման գիծն է։

Կապիտալիստական լագերը գլխավորող ամերիկյան իմպերիալիզմը հանդիսանում է ամենառեակցիոն և սև ուժը, ժողովուրդների ազատության ժանդարմը և խեղդողը, «ամերիկյան միլիարդատերերը, այդ ժամանակա-



կից ստրկատերերը,— գրել է Լենինը, — առանձնապես ողբերգական էջ են բացել արյունալի իմպերիալիզմի արյունալի պատմության մեջ»։

Պատերազմի նախապատրաստման համար կատարվող հսկայական ծախսեր, սպառազինությունների կատաղի մրցավազք, բուրժուական դեմոկրատիայի վերջին մնացուկների ջախջախում, աշխատավորների անողոք կողոպուտ և մի բուռ լկտիացած միլիարդատերերի անընդհատ հարստացում՝ այսպիսին է ժամանակակից Ամերիկան, այսպիսին է նրա ապրելակերպը։

Ամերիկյան իմպերիալիզմը կուրացած է կատաղի չարությամբ դեպի այն ամենը, ինչ առաջավոր է, պրոգրեսիվ։ Ոգուր են ամերիկյան իմպերիալիզմի պարագլուխները ծախու թերթերի էջերից բոլոր ձևերով աղաղակում իրենց խաղաղասիրության մասին։ Փաստերն ասում են հակառակը։

Եթե ամերիկյան իմպերիալիստներն իրոք կողմնակից են խաղաղության, դեմ են նոր պատերազմին, հապա ին-

չո՞ւ նրանք ձախողում ու վիժեցնում են սպառազինությունների կրճատման, հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտի վերաբերյալ առաջարկները։

Եթե ամերիկյան իմպերիալիստները դեմ են պատերազմին, հապա ի՞նչ անուն տալ այն ամենին, ինչ նրանք կատարում են Կորեայում, սպանելով անպաշտպան կանանց ու երեխաներին, ավերելով խաղաղ քաղաքներն ու գյուղերը, գործադրելով բակտերիոլոգիական զենք։

Աշխարհը դեռևս չի իմացել ավելի հրեշավոր և ավելի անամոթ կեղծիք, քան այն, ինչ տարածում են ԱՄՆ-ի իմպերիալիստները։ Ամերիկյան իմպերիալիզմի իսկական դեմքը առանց դիմակի՝ դա ժողովուրդներին կողոպտելն է, պատերազմը, սպանությունները, լրտեսությունը։

Ամերիկյան իմպերիալիզմը լկտիաբար և անամոթ կերպով է իրեն պահում կապիտալիստական երկրներում, քայքայում է նրանց էկոնոմիկան, կողոպտում է ոչ միայն բանվորներին ու գյուղացիներին, այլև մանր ու մի-



ջին բուրժուազիային, ծաղր ու ծանակի է ենթարկում ժողովուրդների տրադիցիաներն ու սովորությունները։ Ամերիկյան իմպերիալիզմի այդպիսի քաղաքականությունը առաջ է բերում ազատասեր ժողովուրդների ատելությունը։ ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությունը խիստ կերպով սրում է կապիտալիստական երկրների միջև գոյություն ունեցող քաղաքական հակասությունները, ուժեղացնում է ամերիկյան իմպերիալիստական գիշատիչների ճանկն ընկած ժողովուրդների պայքարը իրենց անկախության և ազատության համար։

Բոլոր երկրներում ծավալվել է խաղաղության համար մղվող պայքարի կազմակերպված հզոր շարժումը։ Խաղաղության մարտիկների շարքերում գտնվում են տարբեր ազգերի, պրոֆեսիաների, քաղաքական հայացքների, կրոնական համոզմունքների պատկանող հարյուր միլիոնավոր մարդիկ։ Խաղաղության պաշտպանության Վիեննայի կոնգրեսը նորից վառ կերպով ցույց տվեց, որ այդ դեմոկրատական, համաժողովրդական շարժումը մի այն-

պիսի ում է, որն ընդունակ է վիժեցնելու նոր պատերազմի հրձիգների արյունալի պլանները։

Ամերիկյան ագրեսորները ձգտում են բոլոր միջոցներով խաբել ժողովուրդներին, նրանց ներշնչել, թե հնարավոր է միայն մեկ ուղի՝ պատերազմի ուղին, թե այդ պատերազմը պետք է ուղղված լինի Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։

Իսկ սովետական մարդիկ ելնում են սոցիալիզմի ու կապիտալիզմի սիստեմների խաղաղ գոյակցության, նրանց խաղաղ մրցության հնարավորության վերաբերյալ Լենինի ցուցումից։ «Երկու սիստեմների համագործակցության միտքը առաջին անգամ հայտնել է Լենինը։ Լենինը մեր ուսուցիչն է,— ասում է Ի. Վ. Ստալինը,— իսկ մենք սովետական մարդիկս, Լենինի աշակերտներն ենք։ Մենք երբեք չենք նահանջել և չենք նահանջի Լենինի ցուցումներից»։

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը հաստատ ու հետևողականորեն վարում են խաղա-



ղության քաղաքականություն։ «...Մեր պարտիայի շահերը,— ասում է ընկեր Ստալինը,— ոչ միայն չեն հակասում, այլ, ընդհակառակը, միաձուլվում են խաղաղասեր ժողովուրդների շահերին։ Իսկ ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նրա շահերը առհասարակ անբաժանելի են ամբողջ աշխարհի խաղաղության գործից»։

«Նյու-Յորք Թայմս» թերթի թղթակցին ընկեր Ստալինի տված պարզ, սպառիչ պատասխանները նորից հաստատում են, որ Սովետական պետությունը ամուր կերպով պաշտպանում է խաղաղության գործը, վճռականորեն հանդես է գալիս Կորեայում մղվող պատերազմի դեմ և պատրաստ է համագործակցելու կապիտալիստական երկրների, այդ թվում նաև ԱՄՆ-ի հետ, հանուն ամբողջ աշխարհի խաղաղության պահպանման, հանուն ժողովուրդների բարեկամության։ Ընկեր Ստալինի պատասխանները խառնեցին պատերազմի հրձիգների հաշիվները, նորից ամբողջ աշխարհի առջև մերկացրին ագրեսորներին։

Հաստատ ու հետևողականորեն իրա-

գործելով խաղաղության քաղաքականություն, Սովետական պետությունը աչալուրջ կերպով հետևում է պատերազմի հրձիգների մեքենայություններին։ Պարտիան և Սովետական կառավարությունը ղեկավարվում են Լենինի և Ստալինի այն ցուցումներով, որ հարկավոր է մշտապես հոգ տանել սոցիալիստական պետությունն ամրապնդելու, նրա ուժերն ու հզորությունը բազմապատկելու մասին։ Դա էր սովորեցնում Լենինը, դա է մշտապես սովորեցնում ընկեր Ստալինը։

Պատերազմի հրձիգներն իրենց արտաքին քաղաքականությունը կառուցում են շանտաժի և ահաբեկման պրիոմների վրա։ Լենինը նախազգուշացնում էր, որ չպետք է ենթարկվել այդօրինակ էժանագին տրյուկների, որոնք նկատի են առնված թույլ ներվեր ունեցող մարդկանց համար։

Ահա թե ինչ է ասել Լենինը 1922 թվականին. «...եթե մենք թերթերում ամեն տեսակ տեղեկությունների ենք հանդիպում, որոնց միտքն այն է, որ վախեցնեն որևէ մեկին, այն մասին, որ մեր վզին են փաթաթելու ինչ-որ



փորձություն, ապա մենք այդ առթիվ բավական հանդիստ կերպով ժպտում ենք։ Սպառնալիքներ մենք բավականաչափ տեսել ենք և այն էլ ավելի լուրջ սպառնալիքներ, քան առևտրականի սպառնալիքները, որ ուզում է դուռը շրմփացնել՝ առաջարկելով իր ամենավերջին գինը։ Մենք տեսանք դաշնակից տերությունների սպառնալիքները թնդանոթներով, տերություններ, որոնց ձեռքում է գտնվում համարյա ամբողջ աշխարհը, Այդ սպառնալիքներից մեզ չվախեցան»:

ՍՍՌՄ-ի վրա հարձակվելու պլաններ նյութող իմպերիալիստական գիշատիչները թող չմոռանան պատմության դասերը։ Նոր պատերազմի հրձիգները թող իմանան, որ երրորդ համաշխարհային պատերազմը, եթե նրանք այն բորբոքեն, անխուսափելիորեն կհանգեցնի համաշխարհային ամբողջ կապիտալիստական սիստեմի կրախին։ (Երկարատև ծափահարություններ):

Միջազգային ամբողջ ռևոլյուցիոն ...վորական և կոմունիստական շար- մեծ
...եշնչվում է լենինյան

դործելով խաղաղության քաղաքակա-նություն, Սովետական պետությունը աչալուրջ կերպով հետևում է պատե-րազմի հրձիգների մեքենայություննե-րին։ Պարտիան և Սովետական կառա-վարությունը ղեկավարվում են Լենինի և Ստալինի այն ցուցումներով, որ հարկավոր է մշտապես հոգ տանել սոցիալիստական պետությունն ամրա-պնդելու, նրա ուժերն ու հզորությունը բազմապատկելու մասին։ Դա էր սո-վորեցնում Լենինը, դա է մշտապես սովորեցնում ընկեր Ստալինը։

Պատերազմի հրձիգներն իրենց ար-տաքին քաղաքականությունը կառու-ցում են շանտաժի և ահաբեկման պրիոմների վրա։ Լենինը նախազգու-շացնում էր, որ չպետք է ենթարկվել այդօրինակ էժանագին տրյուկների, որոնք նկատի են առնված թույլ ներ-վեր ունեցող մարդկանց համար։

Ահա թե ինչ է ասել Լենինը 1922 թվականին. «...եթե մենք թերթերում ամեն տեսակ տեղեկությունների ենք հանդիպում, որոնց միտքն այն է, որ վախեցնեն որևէ մեկին, այն մասին, որ մեր վզին են փաթաթելու ինչ-որ



փորձություն, ապա մենք այդ առթիվ բավական հանգիստ կերպով ժպտում ենք։ Սպառնալիքներ մենք բավակա-նաչափ տեսել ենք և այն էլ ավելի լուրջ սպառնալիքներ, քան առևտրա-կանի սպառնալիքները, որ ուզում է դուրը շրմփացնել՝ առաջարկելով իր ամենավերջին գինը։ Մենք տեսանք դաշնակից տերությունների սպառնա-լիքները թնդանոթներով, տերություն-ներ, որոնց ձեռքում է գտնվում հա-մարյա ամբողջ աշխարհը, Այդ սպառ-նալիքներից մենք չվախեցանք»:

ՍՍՌՄ-ի վրա հարձակվելու պլան-ներ նյութող իմպերիալիստական գի-շատիչները թող չմոռանան պատմու-թյան դասերը։ Նոր պատերազմի հրր-ձիգները թող իմանան, որ երրորդ հա-մաշխարհային պատերազմը, եթե նրանք այն բորբոքեն, անխուսափե-լիորեն կհանգեցնի համաշխարհային ամբողջ կապիտալիստական սիստեմի կրախին։ (Երկարատև ծափահարու-թյուններ):

Միջազգային ամբողջ ռևոլյուցիոն բանվորական և կոմունիստական շար-ժումը ոգեշնչվում է լենինյան մեծ

գաղափարներով։ Լենինիզմը հարյուր միլիոնավոր մարդկանց պայքարի սըրբազան դրոշն է։

ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակը և կոմունիզմի կառուցումը վճռական ներգործություն ունեն համաշխարհային պատմության ընթացքի վրա։ Լենինի—Ստալինի պարտիայի փորձով, սովետական ժողովրդի փորձով սովորում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները, աշխատավորները։ Լենինիզմի գաղափարները կապիտալիստական և գաղութային երկրների ժողովուրդներին պայքարի են հանում ընդդեմ ճնշողների, հանուն իրենց ազատության և անկախության։

Աշխարհի ժողովուրդները տեսնում են, որ այն երկրներում, որտեղ շողշողում է սոցիալիզմի աստղը, գոյություն ունի նոր, ուրախ ու երջանիկ կյանք։ Ազատ աշխատանք իր համար, իր հայրենիքի համար, իսկական ժողովրդական դեմոկրատիա, անսահման հնարավորություններ ֆիզիկական և հոգևոր ուժերի կատարելագործման



համար, ամենաառաջավոր, իսկապես մարդասիրական կոմունիստական գաղափարների տիրապետություն՝ այսպիսին է սոցիալիստական աշխարհակարգը, որը առաջ է բերում ամբողջ աշխարհի աշխատավորների հիացմունքը։

Դեպի նոր կյանք տանող ուղին ամբողջ մարդկությանը նշել է Լենինի—Ստալինի հանճարը։ Եթե ոչ այսօր, ապա վաղը այդ ուղու վրա կկանգնեն բոլոր երկրների, ամբողջ աշխարհի ժողովուրդները։ Այլ ուղի չկա և չի կարող լինել։ Այդ է սովորեցնում Լենինը, այդ է սովորեցնում պատմությունը։

Ռուսաստանում ռևոլյուցիոն շարժման արշալույսին Լենինը գրում էր.

«Մենք ստվար խմբով, ամուր բռնած միմյանց ձեռքերից, գնում ենք դառնի և դժվար ուղիով։ Մենք բոլոր կողմերից շրջապատված ենք թշնամիներով և գրեթե միշտ հարկադրված ենք գնալ նրանց կրակի տակով»։

Կոմունիստական շարժումը, որին իր կյանքը նվիրաբերեց Լենինը, աճել-գարձել է հզոր, անպարտելի ուժ։

Լենինի—Ստալինի դրոշի ներքո համախմբվել են միլիոնավոր մարտիկներ։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր շարքերում ունի մոտ յոթ միլիոն անդամ և թեկնածու։ Աշխարհի կոմունիստական և բանվորական պարտիաների մեջ մըտնում են ավելի քան քսանչորս միլիոն մարդ։ Դա մեծ ուժ է։

«Այժմ,—ասում է ընկեր Ստալինը,— երբ Չինաստանից ու Կորեայից մինչև Չեխոսլովակիա ու Հունգարիա երևան են եկել նոր «Հարվածային բրիգադաներ» ի դեմս ժողովրդա-դեմոկրատական երկրների, այժմ մեր պարտիայի համար ավելի է հեշտացել պայքարելը, և գործն էլ ավելի լավ է գնում»։

Կոմունիստական և բանվորական պարտիաների աճը լենինիզմի կենդանի մարմնացումն է, լենինյան գաղափարների մեծ հաղթանակի վկայությունը։ Կոմունիզմը հաղթանակում է, կոմունիզմը կհաղթանակի վերջնականորեն և անվերադարձ կերպով։

Լենինիզմի գաղափարները թափանցում են երկրագնդի ամենահեռավոր



անկյունները։ Աշխարհում չկա և չի կարող լինել այնպիսի ուժ, որը կարողանա կանգնեցնել նրանց հաղթական երթը։

## III.

Սովետական ժողովրդի բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը Լենինի և Ստալինի կողմից ստեղծված Կոմունիստական պարտիան է։ Աշխարհում չի եղել այնպիսի պարտիա, որը այդպիսի հետևողականությամբ, հաստատակամությամբ և անվեհերությամբ պայքարեր աշխատավորների շահերի համար, ինչպես նրանց համար պայքարում է կոմունիստների պարտիան։ Լենինի—Ստալինի պարտիան անսահման սեր ու հարգանք է նվաճել ժողովրդի գործի համար իր մղած անձնվեր պայքարով։

Լենինը և Ստալինը պարտիային կոփել են աշխատավորների բոլոր թշնամիների դեմ մղված անհաշտ պայքարում, նրան դաստիարակել են ժողովրդի ուժերի նկատմամբ անսասան հավատի ոգով, իր ճանապարհի բոլոր

խաչընդոտները խորտակելով, դեպի նշված նպատակը հաստատ ու աներեր ընթանալու պատրաստակամության ոգով։ Ժողովուրդը Լենինի—Ստալինի պարտիային վստահեց իր ճակատագիրը, իր ապագան, և չսխալվեց նրանում։ Բոլոր դժվարությունների և փորձությունների միջով, փոթորիկների ու ամպրոպների միջով Կոմունիստական պարտիան Լենինի դրոշի ներքո, ընկեր Ստալինի ղեկավարությամբ համարձակորեն և վստահորեն սովետական ժողովրդին տանում է հաղթանակից հաղթանակ։

Լենինը շարունակ հոգ էր տանում պարտիայի միասնության, նրա շարքերի անսասանության, պարտիայի անդամի կոչումը բարձրացնելու մասին։ Ընկեր Ստալինի ղեկավարությամբ պարտիան հաստատակամորեն իրականացնում է լենինյան այդ սկզբունքը։ Կոմունիստական պարտիան կազմում է համախոհների մարտական միություն, որն ուժեղ է իր համախմբվածությամբ, կազմակերպվածությամբ, անսահման նվիրվածությամբ Լենինի—Ստալինի մեծ գործին, իր



առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինին։ (Երկարատև ծափահարություններ):

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը, որն ընդունվեց 19-րդ համագումարի կողմից, է՛լ ավելի է բարձրացնում պարտիայի անդամի կոչումը։ Կոմունիստների նկատմամբ պարտիայի Կանոնադրության ներկայացրած պահանջները իրենց հսկայական բարերար ազդեցությունն են գործում ոչ միայն կոմունիստների վրա։ Աշխատավոր մասսաները հետևում են պարտիային, սովորում պարտիայից և նրա սկզբունքներում տեսնում են ամենաառաջավոր և ամենաարդարացի գաղափարների մարմնավորումը։

Լենինը պարտիային շարունակ դաստիարակում էր աշխատավորների լայն մասսաների հետ սերտ ու անխզելի կապի ոգով։ Ընդգծելով լենինյան այդ պահանջը, ընկեր Ստալինը նշում է, որ կապը մասսաների հետ, մասսաների ձայնին ունկնդրելը, կարողանալը պարտիական ղեկավարության անպարտելիության թանալին է։

Սովետական Միության աշխատա-

վորները բազմամյա փորձով համոզվել են, որ Լենինի—Ստալինի պարտիան չունի ոչ մի այլ շահ, բացի ժողովրդի շահերից, որ Կոմունիստական պարտիան իր բարձրագույն նպատակը տեսնում է Հայրենիքին, ժողովրդին անձնվիրաբար ծառայելու մեջ։ Հենց դրանով էլ բացատրվում է այն, որ Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը մեր երկրի բոլոր աշխատավորներն ընդունում են որպես իրենց հարազատ ու կենսական գործը։ Լենինյան գաղափարների կենսագործման, լենինիզմի հաղթանակի համար մղվող պայքարը վաղուց դարձել է ոչ միայն պարտիայի, ոչ միայն կոմունիստների, այլև անպարտիականների ամենալայն խավերի, ամբողջ սովետական ժողովրդի գործը։

Կոմունիստական պարտիայի բնորոշ առանձնահատկություններից մեկը, որ նրան հատուկ է որպես իսկական ռևոլյուցիոն պարտիայի, որպես նոր տիպի պարտիայի, դա քննադատության և ինքնաքննադատության մեթոդն է։ Քննադատությունը և ինքնաքննադատությունը դժվարությունների ու հա-



կասությունների բացահայտման և հաղթահարման հատուկ, սոցիալիստական մեթոդ է։ Լենինը նշում էր, որ միայն իսկական ռևոլյուցիոն, ուժեղ և ամուր, համախմբված և միասնական պարտիան կարող է համարձակորեն քննադատել իրեն, բացահայտել իր սխալները, թուլությունները, թերությունները և հաղթահարել դրանք։

Ընկեր Ստալինը շարունակ սովորեցնում է, որ ինքնաքննադատությունը մեզ անհրաժեշտ է ինչպես օդը, ինչպես ջուրը, որ ինքնաքննադատության լոզունգը կադրերի դաստիարակության կոմունիստական մեթոդի ոգին է։ Ելնելով Լենինի և Ստալինի ցուցումներից, մեր պարտիայի Կանոնադրությունը որպես պարտիայի անդամի կարևորագույն պարտավորություններից մեկը հաստատում է՝ զարգացնել ինքնաքննադատությունը և ներքևից եկող քննադատությունը, հայտնաբերել աշխատանքում եղած թերությունները և հասնել դրանց վերացմանը, պայքարել պարադային բարեհաջողության և աշխատանքում հաջողություններով արբենալու դեմ։ Քըն-

նադատության ճնշումը պարտիան դիտում է որպես ծանր չարիք։ Նա, ով խեղդում է քննադատությունը, այն փոխարինում պարադայնությամբ և գովաբանությամբ, չի կարող գտնվել մեր պարտիայի շարքերում։

Նոր հասարակարգի կառուցման գործում սովետական ժողովրդի հաջողությունները իրոք վիթխարի են և համաշխարհային պատմական նշանակություն ունեն։ Այդ հաջողությունները ոչ բավականաչափ հասունացած շատ ընկերների մեջ առաջ են բերում բարեհոգության և անհոգության, քաղաքական զգոնության բթացման զգացում։

Սովետական Միությունը պատմության մեջ չտեսնված հաղթանակ տարավ Հայրենական մեծ պատերազմում։ Կարճ ժամկետում երկիրը լիկվիդացրեց ահավոր ավերածությունները, պատերազմի հետևանքները, անսահմանորեն առաջ քայլեց։ Սակայն դրանից չի հետևում, թե արդեն վերացել են դասակարգային պայքարի բոլոր հարցերը, թե այժմ մեր երկրի համար վերացել է կապիտալիստական պե-



տությունների կողմից վնասարարության, դիվերսիայի, լրտեսության վտանգը։ Որքան ավելի նշանակալի են կոմունիստական շինարարության հաջողությունները, այնքան պայքարը ավելի խարդախ, նողկալի և դաժան եղանակներ ու մեթոդներ են գործադրում մեր թշնամիները։ Որքան ավելի հաջող է մեր առաջընթացը, այնքան ավելի սուր կլինի մեր ժողովրդի թշնամիների պայքարը, որոնք դատապարտված են անխուսափելի կործանման։

Ամփոփելով Սովետական իշխանության քաղաքականության իրականացման առաջին արդյունքները, Լենինն ասում էր, որ առաջին պատվիրանը, առաջին դասը, որը պետք է յուրացնեն բոլոր բանվորներն ու գյուղացիները, բոլոր աշխատավորները, դա զգաստ լինելն է, միշտ հիշելը, որ մենք շրջապատված ենք այնպիսի մարդկանցով, դասակարգերով, կառավարություններով, որոնք բացեիբաց մեծագույն ատելություն են արտահայտում մեր նկատմամբ։

Ընկեր Ստալինը բազմիցս ընդգծում

է դասակարգային պայքարի մար֊
ման» վերաբերյալ դատողությունների
խորապես հակապարտիական իմաս֊
տը։

«Որոշ ընկերներ,— ասում է ընկեր
Ստալինը,— դասակարգերի ոչնչաց֊
ման, անդասակարգ հասարակարգի
ստեղծման և պետության մահաց֊
ման վերաբերյալ թեզիսը հասկա֊
ցել են որպես ծուլության և բարե֊
հոգության արդարացում, որպես
դասակարգային պայքարի մարման
և պետական իշխանության թուլաց֊
ման կոնտրռևոլյուցիոն թեորիայի
արդարացում։ Նույնիսկ հարկ չկա
ասելու, որ այդպիսի մարդիկ ընդ֊
հանուր ոչինչ չեն կարող ունենալ
մեր պարտիայի հետ։ Դրանք այլա֊
սերվածներ են, կամ էլ երկերեսա֊
նիներ, որոնց հարկավոր է դուրս
շպրտել պարտիայից։ Դասակարգե֊
րի ոչնչացումը ձեռք է բերվում ոչ
թե դասակարգային պայքարի մար֊
ման միջոցով, այլ նրա ուժեղաց֊
ման միջոցով»։

Սոցիալիզմը մեր երկրում հաղթա֊
նակել է։ ՍՍՌՄ-ում վաղուց ջախ֊



ջախվել ու լիկվիդացվել են շահագոր֊
ծող դասակարգերը։ Բայց մեզ մոտ
դեռևս պահպանվել են բուրժուական
իդեոլոգիայի մնացուկները, մասնա֊
վոր-սեփականատիրական հոգեբանու֊
թյան ու մորալի մնացուկները, պահ֊
պանվել են բուրժուական հայացքների
և բուրժուական մորալի կրողները՝
կենդանի մարդիկ, մեր ժողովրդի թաք֊
նված թշնամիները։ Իմպերիալիստա֊
կան աշխարհի աջակցությունն ստա֊
ցող այդ թաքնված թշնամիները մեզ
վնասել են և կվնասեն այսուհետև ևս։
Հենց այդ մասին է համոզիչ կերպով
խոսում վնասարար բժիշկների խմբի
գործը, այն ստոր լրտեսների ու մար֊
դասպանների, որոնք թաքնվել էին
բժիշկների դիմակի տակ, վաճառվել
ԱՄՆ-ի և Անգլիայի ստրկատեր-մար֊
դակերներին։

Սովետական բոլոր մարդկանցից
պահանջվում է քաղաքական բարձր
զգոնություն, որը բացառում է բարե֊
հոգության, անհոգության իդիոտային
հիվանդության ամեն մի դրսևորում,
զգոնություն, որը կանխում է թշնա֊
մու փորձերը՝ վնասելու և քայքայելու,

զգոնություն, որն օգնում է մերկացնելու թշնամական գործակալներին, ինչպիսի դիմակով էլ նրանք քողարկվեն։ Զգոնությունը պետք է լինի մեր մշտապես գործող զենքը։

Թշնամական գործակալներից բացի, մենք ունենք նաև մի այլ թշնամի՝ մեր մարդկանց բերանբացությունը։ Մեզ մոտ քիչ բերանբացներ չկան։ Հենց մեր մարդկանց բերանբացությունն էլ սննդարար միջավայր է լրտեսների ու դիվերսանտների համար։ Կանի դեռ մեզանում կա բերանբացություն՝ կլինի նաև վնասարարություն։ Նշանակում է, վնասարարությունը լիկվիդացնելու համար հարկավոր է վերջ տալ բերանբացությանը մեր շարքերում։

Հետևելով անմահ Լենինի ցուցումներին, սովետական մարդիկ ոչ մի րոպե չպետք է մոռանան, որ անհրաժեշտ է ամեն կերպ բարձրացնել իրենց զգոնությունը, աչալուրջ հետևել պատերազմի հրձիգների բոլոր խարդախություններին և անդուլ կերպով ամրապնդել Սովետական պետության Զինված Ուժերն ու հետախուզության օրգանները։



Սոցիալիզմից դեպի կոմունիզմ սովետական հասարակության անցման պայմաններում հատկապես մեծանում է աշխատավորների կոմունիստական դաստիարակության աշխատանքի նշանակությունը։ Սովետական ժողովրդի դաստիարակության գաղափարական հիմքը լենինիզմն է։ Կոմունիստական պարտիան ուժեղ է նրանով, որ նա իր ամբողջ գործունեության մեջ ղեկավարվում է մարքսիստական-լենինյան թեորիայով։ Ընդգծելով մարքսիզմ-լենինիզմի մեծ նշանակությունը, ընկեր Ստալինը բազմիցս նշել է, որ մեր պարտիայի ունեցած բոլոր սեփականություններից ամենակարևորն ու արժեքավորը նրա գաղափարական սեփականությունն է։

Լենինի—Ստալինի պարտիան սովետական ժողովրդի մեջ դաստիարակում է կոմունիստական վերաբերմունք աշխատանքի, սոցիալիստական սեփականության նկատմամբ, նրա մեջ զարգացնում է հասարակական պարտքի բարձր գիտակցություն, արմատավորում է սովետական հայրենասիրու-

թյան և ժողովուրդների անխախտ բարեկամության գաղափարները։ Պարտիան սիրով աճեցնում ու զարգացնում է սովետական մարդկանց լավագույն հատկությունները, կոմունիստական հասարակարգ կառուցողների ազնիվ գծերը։

Մեր երկրում տիրապետում է սոցիալիստական իդեոլոգիան։ Բայց դրանից ամենևին չի հետևում, թե կարելի է թույլ տալ պարտիայի գաղափարական-դաստիարակչական աշխատանքի որևէ, նույնիսկ ամենափոքր թուլացում։ Սոցիալիստական իդեոլոգիայի ամեն մի թուլացում հանգեցնում է բուրժուական իդեոլոգիայի ուժեղացմանը։ Պարտիայի 19-րդ համագումարում խիստ քննադատության ենթարկվեցին իդեոլոգիական աշխատանքում եղած լուրջ թերությունները։ Խնդիրն այն է, որպեսզի լենինիզմի հիման վրա ապահովվի դաստիարակչական աշխատանքի վերելքը բոլոր պարտիական կազմակերպություններում։

Պարտիան իր ամբողջ աշխատանքն իրագործում է կադրերի միջոցով։



Կադրերի ընտրությունից, դաստիարակությունից և ուսուցումից կախված է գործի հաջողությունը կամ նրա ձախողումը։ Լենինը և Ստալինը միշտ էլ բացառիկ նշանակություն են տվել կադրերի ընտրությանը և կատարման ստուգմանը, որպես կազմակերպական աշխատանքի վճռական պայմանի։ Կադրերը որոշում են ամեն ինչ, սովորեցնում է ընկեր Ստալինը։

Մենք պետք է հաստատակամորեն կենսագործենք կադրերի ընտրության ու դաստիարակության լենինյան-ստալինյան սկզբունքները։ Պարտիայի 19-րդ համագումարի առաջադրած խնդիրների լույսի տակ այդ հարցերը պետք է առաջնահերթ տեղ գրավեն պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ։

Ոչ մի տարակույս չի կարող լինել, որ Լենինի—Ստալինի պարտիան պատվով կկատարի իր պատմական խնդիրները։ Ոգեշնչվելով իր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի կողմից, Կոմունիստական պարտիան հաստատ ու վստահորեն սովետական

ժողովրդին տանում է դեպի նշված նպատակը։

❁❁❁

Սովետական Միության Կոմունիստական պարտիան մեծ հաղթանակներ է ձեռք բերել ու ձեռք է բերում, որովհետև նա ամեն ինչում և միշտ հավատարիմ է լենինիզմին, որովհետև նա սրբորեն մեծարում ու կենսագործում է լենինյան պատգամներն ու կանխագծումները։

Մարքսիստական-լենինյան թեորիան, որով ղեկավարվում է մեր պարտիան, անընդհատ զարգանում ու հարստանում է նոր փորձով։ Նոր դարաշրջանի՝ կոմունիստական հասարակարգի կառուցման դարաշրջանի պայմաններում լենինիզմը իր հանճարեղ աշխատություններում է՛լ ավելի է զարգացնում պարտիայի, սովետական ժողովրդի և ամբողջ պրոգրեսիվ մարդկության իմաստուն առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը։ (Երկարատև ծափահարություններ):

Լենինի—Ստալինի մարտական ու դրոշով մեր պարտիան պայքարեց սո



վետական երկրում նոր հասարակարգի հաղթանակի ու ամրապնդման համար և հասավ այդ հաղթանակին։

Լենինյան դրոշով, Լենինի գործի մեծ շարունակող ընկեր Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ Կոմունիստական պարտիան և սովետական ժողովուրդը կհասնեն կոմունիզմի կառուցմանը։ (Ծափահարություններ):

Կեցցե՛ լենինիզմը։ (Ծափահարություններ):

Կեցցե Սովետական Միության Կոմունիստական պարտիան, Լենինի—Ստալինի պարտիան, մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը։ (Ծափահարություններ):

Կեցցե Լենինի գործի մեծ շարունակող մեր իմաստուն առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը։ (Բուռն ծափահարություններ):

Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ առա՜ջ, դեպի կոմունիզմի հաղթանակը։ (Բուռն, երկար ժամանակ չլռող ծափահարություններ, որ արտահայտում է ջերմ սեր դեպի ամբողջ պրոգրեսիվ մարդկության առաջնորդ ընկեր Ստալինը։ Բոլորը ոտքի են կանգնում):

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍՈՒՄ

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները, որ մեզ մոտ տեղի են ունենալու 1953 թ. մարտի 1-ին, խոշոր քաղաքական նշանակություն ունեցող գործ է։

Սպանդարյան ռայոնի պարտիական կազմակերպությունները տեղական Սովետների ընտրությունների առթիվ լայն քաղաքական ագիտացիոն աշխատանք են ծավալել ինչպես ռայոնի հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվներում, նույնպես և բնակչության մեջ՝ ըստ նրանց բնակավայրի։

Ռայոնի բոլոր 34 ընտրական տեղամասերում կազմակերպվել են ագիտպունկտեր, որոնցում ընդգրկված 1.560 ագիտատորները բնակչության մեջ սիստեմատիկ ագիտացիոն զը-



րույցներ են անցկացնում ստալինյան Կոնստիտուցիայի, աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների կանոնադրության, պարտիայի 19-րդ համագումարի նյութերի, ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատության և այլ հարցերի շուրջը։

Ամենուրեք ընտրողները մեծ հետաքրքրություն և ակտիվ մասնակցություն են ցուցաբերում ագիտատորների զրույցներին։

Ընտրողների մեջ տարվող ագիտացիոն աշխատանքն առանձնապես լավ է կազմակերպված № 4 ընտրական տեղամասում, որի ագիտպունկտի ղեկավարն է ընկ. Վ. Սահակյանը։ Այս ընտրական տեղամասի ընդգրկած տերիտորիայում ագիտացիոն աշխատանք են կատարում 44 ագիտատորներ, որոնց ճնշող մեծամասնությունը ունեն բարձրագույն կրթություն։

Ագիտպունկտը տեղավորված է Հայպետհրատի շենքում, այն խնամքով

պահավորված է, զարդարված համապատասխան պլակատներով, լոզունգներով, դիագրամաներով։ Ստացվում են ամենօրյա լրագրեր, կա համապատասխան գրականություն, որոնցից օգտվում են ագիտատորները և ընտրողները։

Ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Սահակյանը տվյալ ընտրական տեղամասի տերիտորիայում քաղաքական աշխատանքը ղեկավարող սկզբնական պարտկազմակերպության քարտուղարների մասնակցությամբ կազմել է ագիտացիոն կրույցների թեմատիկ պլան և աշխատանքի ծրագիր։

Համաձայն այդ պլանի ընկ. Սահակյանը շաբաթական մեկ անգամ ագիտատորների հետ անց է կացնում սեմինար պարապմունք, որտեղ ագիտատորները ստանում են տեսական և մեթոդական օգնություն։ Սեմինար պարապմունքներում, իրենց աշխատանքի փորձից ելնելով, դիտողություններով հանդես են գալիս իրենք ագիտատորները, որը մեծ օգնություն է հանդիսանում ագիտացիոն աշխա-



տանքի փորձ չունեցող երիտասարդ ագիտատորներին։

Ընկ. Սահակյանը արդեն անց է կացրել վեցը սեմինար պարապմունք, նվիրված «Ստալինյան Կոնստիտուցիան՝ ամենադեմոկրատական կոնստիտուցիան՝ է աշխարհում», «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր հընգամյա պլանը», «ՍՍՌՄ-ի միջազգային դրության մասին», «Ընկեր Ստալինի ճառը պարտիայի 19-րդ համագումարում» և այլ թեմաների։

Բացի դրանից, ագիտպունկտում ագիտկոլեկտիվի համար կազմակերպվել է դասախոսություն ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության մասին, այդ դասախոսությանը մասնակցել են նաև ընտրողները։

Նախատեսված է ընտրողների համար զեկուցում կազմակերպել նաև «Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ուղիների մասին» թեմայով։

Փորձը ցույց է տվել, որ ագիտատորի աշխատանքի հաջողությունը շատ դեպքում կախված է լինում այն

քանից, թե ինչպես է նա կարողանում գրավել իր լսողներին, որքանով ճիշտ է պատասխանում նրանց հետաքրքրող հարցերին, որքանով աշխույժ և հետաքրքիր է անցկացնում զրույցը։ Ագիտատորները հենց այս հանգամանքի վրա լուրջ ուշադրություն են դարձնում։ Օրինակ՝ ագիտատոր, ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու ընկ. Հ. Հայրապետյանը, որը ագիտացիոն աշխատանք է տանում Կիրովի փող. № 23 տան բնակիչների հետ, յուրաքանչյուր զրույցից առաջ, նախքան հիմնական թեմային անցնելը, ընտրողների հետ զրույց է ունենում նրանց հետաքրքրող հարցերի մասին։ Ընկ. Հայրապետյանի այսպիսի մոտեցումը պարզ, մտերիմ, ընկերական հարաբերություններ է ստեղծել նրա և ունկնդիրների միջև, որոնք մեծ հետաքրքրություն են ցուցաբերում զրույցներին։ Նա հմտորեն զրույցի թեման կապում է ընթացիկ դեպքերի հետ, ուշադրությամբ լսում և պատասխանում է նրանց հարցերին։ Վերջին պարապմունքներից մեկի ժամանակ խոսելով տեղական Սովետների՝ որ-



պես պետական իշխանության տեղական օրգանների մասին, նա պարզաբանեց, որ աշխատավորների տեղական Սովետներում մասնակցում են աշխատավորական լայն մասսաները, որ այդ օրգանները կենսագործում են մեր պարտիայի և պետության քաղաքականությունը։ Նա առանձնապես նշեց, որ տեղական Սովետների միջոցով է, որ ապահովվում է ազգաբնակչության մշտական և ակտիվ մասնակցությունը պետական կառավարմանը։ Այնուհետև նա մանրամասն բացատրեց, թե ինչպես տեղական Սովետների մշտական գործող հանձնաժողովները ակտիվ մասնակցություն են ունենում տվյալ ռայոնի կամ քաղաքի արդյունաբերության, ժողովրդական կրթության, առևտրի, կոմունալ շինարարության աշխատանքների հսկողության գործում։ Խոսելով բուրժուական կեղծ դեմոկրատիայի մասին, ագիտատորը ցույց տվեց, թե ինչպես կապիտալիստական երկրների կոնստիտուցիաները, ընտրական իրավունքի զանազան սահմանափակումներով, աշխատավորությանը հեռու են պա-

հում պետության կառավարման գործից, օրինակ բերելով ԱՄՆ-ը, որտեղ ավելի քան 10 միլիոն նեգրեր զրկված են ընտրական իրավունքից միայն այն պատճառով, որ նրանց մաշկի գույնը սև է։ Անգլիայում տարրական կրթություն ունեցողները զրկված են ընտրական իրավունքից։ Մեզ համար միանգամայն պարզ է, ասում է ագիտատորը, որ կապիտալիստական երկրներում աշխատավորության մեծ մասը զրկված է կրթություն ստանալու հնարավորությունից, այդ հնարավորություններն ունեն միայն հարուստները, հետևապես, այդ երկրներում ընտրելու և ընտրվելու հնարավորությունն էլ տրված է հարուստներին, էլ չենք ասում այն խարդախությունների մասին, որ կատարում են կապիտալիստները ընտրությունների ժամանակ։

Այնուհետև ագիտատորը պարզ ու հասկանալի ձևով բացատրում է, թե ինչպես կոմունիստական պարտիայի



վարած ազգային ճիշտ քաղաքականության շնորհիվ Սովետական Միությունում ստեղծված է ժողովուրդների անխախտ բարեկամություն և բարոյա-քաղաքական միասնություն։ Մեզ մոտ բոլոր քաղաքացիները իրավունք ունեն ընտրելու և ընտրվելու Սովետներում, բացառությամբ խելագարներից և դատավճռով ընտրական իրավունքից զրկվածներից։

Եզրափակելով իր զրույցը ընկ. Հայրապետյանը նշում է, որ մեր սոցիալիստական երկրում դեմոկրատական այդ մեծ իրավունքը՝ ընտրելու և ընտրվելու իրավունքը Ստալինյան Կոնստիտուցիան է տվել ժողովրդին։

Աշխույժ և հետաքրքիր են անցկացնում իրենց զրույցները նաև ագիտատորներ՝ Ե. Սարգսյանը, Ս. Ասլամազյանը, Լ. Խուդոյանը, Մ. Սաֆարյանը և ուրիշներ։

Ագիտատորները յուրաքանչյուր զրույցից հետո ագիտպունկտի ղեկա-

վարին տեղյակ են դարձնում, թե զրույցին քանի մարդ է մասնակցել, ինչ հարցեր են տվել և ինչն է նրանց ավելի հետաքրքրում։ Ունենալով այս տեղեկությունները, ագիտպունկտի ղեկավարը համապատասխան փոփոխություն է մտցնում ագիտացիոն զրույցների թեմատիկայում։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ աշխատավորությունը առանձին հետաքրքրություն է ցուցաբերում պարտիայի 19-րդ համագումարի նյութերի և ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատության նկատմամբ։

Տեղական Սովետների ընտրությունները քաղաքական մեծ և պատասխանատու կամպանիա է։ Ընտրությունների հաջող նախապատրաստումն ու անցկացումը կախված է նաև ագիտատորների աշխատանքից, որոնք մասսայի մեջ են տանում պարտիայի ճշմարտացի խոսքը։ Յուրաքանչյուր



ագիտատորի պարտքն է ագիտացիոն աշխատանք կատարել իրեն ամրացված բոլոր ընտրողների հետ, օգնել նրանց հետագա ակտիվացմանը՝ ինչպես արտադրության մեջ, նույնպես և հասարակական-քաղաքական կյանքում։

Այս օրերին աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստման և անցկացման շրջանում, ագիտատորների խնդիրն է քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով մասսաների սեփականությունը դարձնել պարտիայի 19-րդ համագումարի որոշումները, որոնց խոր ուսումնասիրումը և բազմակողմանի մասսայականացումը կհանդիսանա տեղական Սովետների ընտրություններին աշխատավորության ակտիվ մասնակցության գրավականը։

Ա. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ
ՀԿՊ Սպանդարյան ռայկոմի
քարտուղար

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

ՖՐԻԴՐԻԽ ԷՆԳԵԼՍ.— Անտի Դյուրինգ: 509 *էջ, գինը 7 ռ. 80 կոպ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Լենինիզմի հիմունքների մասին: Լենինիզմի հարցերի շուրջը, *402 էջ, գինը 3 ռ. 70 կոպ.։*

Ի. ՌՅԱԲՅԵՎ.— Մարքսիստական պարտիայի իդեոլոգիական հիմքերի մշակումը Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի կողմից: *117 էջ, գինը 1 ռ. 20 կոպ.։*

Ա. Ի. ԳԵՐՑԵՆ.—Եղելություններ և խոհեր. *Երեք գրքով, գիրք Բ., 310 էջ, գինը 8 ռ 40 կոպ.։*

Ե. ԲԱՐՍԵՂՅԱՆ.— Ստեփան Շահումյան: *184 էջ, գինը 4 ռ. 40 կոպ.։*

---

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 00073 Պատվեր № 86 Տիրաժ 9060*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։*